ՍԱՐԳԻՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՀԻՇԱՏԱԿԻ ԾԱՌԸ

*Երբ ես ծնվեցի, պատերազմն արդեն ավարտվել էր: Բայց ես լավ գիտեի, թե ինչ է պատերազմը...*

*Պատերազմը՝ դա իմ հայրիկն էր, իր անբաժան հենակներով, իմ Սերոբ հորեղբայրը, որ այդպես էլ չեկավ կռվից, ու մեկ էլ տատս՝ կորցրածից դառնացած, կորացած...*

*— Վա՜յ, Սերո՛բ, Սերո՛բ, անխի՜ղճ բալա:*

*Տատս էր, որ քանի ծերանում, այնքան հաճախ էր հիշում որդուն, որը մի օր գնացել ու ետ չէր եկել:*

*— Ա՜յ Սերոբ, գոնե մի բառ գրեիր:*

*Տատս էր, որ կարծես նեղացել էր Սերոբ հորեղբորս լռությունից: Նա գնացել էր ու ոչ մի լուր:*

*— Սերո՛բ ջան, հոգո՜ւդ մեռնեմ, գոնե մեկ էլ տեսնեի...*

*Տատս էր, կորցրածից դառնացած, կորացած, արցունքներն աչքերին:*

*— Տա՜տ ջան, ինձ հե՞տ ես,— շշուկով հարցնում էի ես, որպեսզի ցրեմ տխրությունը:*

*— Չէ՛, ծա՛գ ջան, մյուս Սերոբիս հետ եմ:*

*Փոքրիկ պարտեզ ունեինք, ուր ծառեր ու ծաղիկներ շատ կային, բայց մեկը՝ խնձորենին, ամենաթանկն էր մեզ համար: Այդ Սերոբ հորեղբայրս էր տնկել: Թեյում, ճաշում, վրուցում էինք խնձորենու ստվերում:*

*Տատիկիս համար աշխարհը փոքրացել, տնից մինչև ծառն էր դարձել:*

*Այդ ծառի միրգը բաժանում էինք հարևաններին, հյուրասիրում բոլորին:*

*— Լավն է, չէ՞, համով է, չէ՞:*

*Տատս էր, որ հարցնում էր ամենքին ու աղերսագին նայում դեմքերին, որ հակառակը չասեն: Մարդիկ բարի էին, գովում էին:*

*— Էլի՛ կերեք, շատ կերեք, Սերոբիս ծառից է:*

*Ու մի օր էլ ռումբի պես մի լուր պայթեց մեր բակում:*

*Մարդիկ եկան, չափեցին, չափեցին, հետո էլ, թե՝ պետք է քանդենք, նոր շենք կառուցենք:*

*— Է՛, լավ, տունը քանդեք, բա ծա՞ռը:*

*Մարդիկ ծիծաղեցին ու գնացին...*

*Մի քանի օր անց մեքենաները եկան ու սկսեցին քանդել: Հսկա ծառերը տեղահան էին լինում բնից ու տապալվում:*

*Մեքենան կամաց-կամաց մոտենում էր խնձորենուն: Պողպատյա լարեր կապեցին ծառերից ու մեքենան վարող մարդը անտարբեր միացրեց շարժիչը:*

*— Վա՜յ, կուրանամ ես, Սերոբ ջա՜ն:*



Տատս վազեց, փաթաթվեց ծառին:

— Մայրի՛կ ջան, որոշում է, մենք ի՞նչ անենք,— ասաց սև բաճկոնով մի մարդ, որը նրանց ղեկավարն էր:

Հարևաններից մեկը պատմեց ծառի պատմությունը: Հետո նրանք գնացին, ուրիշների հետ ետ եկան, էլի գնացին ու էլի ետ եկան: Մի մարդ էլ եկավ, որ երևի պաշտոնով բարձր էր բոլորից: Մի փոքրամարմին, նիհար մարդ էր: Երկար նայեց տեղանքը, ծանոթացավ տատիկիս հետ:

— Հանգի՛ստ մնա, մայրի՛կ ջան, շենքն այնպես կկառուցենք, որ ծառին վնաս չտա,— ասաց ու գնաց...

— Երկա՛ր ապրես, բալա՛ ջան, Սերոբս լավ տղա էր:

Մի տարի անց շենքը պատրաստ էր: Իսկ շենքի կողքին կանգնած էր ծառը, վրայից կախված մի ցուցատախտակ՝

ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ԶՈՀՎԱԾ
ԶԻՆՎՈՐԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

Ծառի տակ նստարան էլ դրեցին:

Երբեմն կտեսնեք տատիկիս այնտեղ. ծերացած, կորացած, կորցրածից դառնացած: Մարդ անցնելիս ժպտում է իր տխուր ժպիտով ու միայն այդքան:

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

## ԻՄ ԸՆԿԵՐԸ

Հավքերն են ճախրում խնեթուրախ ճիչով,
Ջարթնել է հողի կարոտը նորեկ···
Կարծես թե գարնան օրերի միջով
Տեսնում եմ ահա լուսավոր մի դեմք:
Այդ իմ ընկերն է անցած մանկության,
Որի հետ խաղում ու անհոգ երգում
Եվ քշում էինք դաշտի մեջ գութան,
Մեր հայրերի հետ մեր հողը հերկում:
Սիրտս լալիս է այնպես լուռ ու մունջ,
Ետ բերում հաճախ այն օրերն անվիշտ···
Ընկերս կռվում ընկել է վաղուց
Եվ Վորոնեժում ննջում է հանգիստ:
Ընկերս հեռվում քնած է հիմա,
Մի ծառ է հսկում հերոսի հողին...
Այդ ճերմակ կեչին բարությամբ նրա
Ողջույն է տալիս անցորդ-դարձողին:



ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

## ՍԵՎ ԵԶԸ

Ամառը հայրս զբաղվում էր այլ գործերով:

Մեր Ծուռ Սալաթի հորթերը մեծ մասամբ սատկում էին հենց առաջին ամսվա ընթացքում: Մնացել էր մի աչառ: Կարմիր, չալճակատ, գեղեցիկ և մոր նման ծուռ: Անունը Բաշո էր:

Հայրս Բաշոյին լծել չէր կարող, որովհետև զույգը չուներ: Ուստի դարձրել էր բեռնատար: Սպիտակ ավել էր բարձում ծուռ Կարմրոյին, տանում էր Վան, այնտեղ փոխանակում հին շորերի կամ մրգի հետ: Հին շորերն իրքներս էինք հագնում, իսկ մրգեղենը՝ տանձ, խնձոր, սալոր, ձմերուկ, հայրս փոխանակում էր հացահատիկի հետ և դրանով լրացնում ընտանիքի պաշարը:

Մեր Ծուռ Բաշոն հաճախ տրտինգ էր գալիս ու բեռը ցած նետում՝ ջարդելով մրգերը: Իսկական տնաքանդություն էր, երբ նա ձմերուկի բեռն էր ցած նետում: Հայրս նախ աչառին անխնա ծեծում էր, հետո հետը հաշտվում և իր ցավերն ու հոգսերը նրան պատմելով գալիս էր տուն:

Մայրս այսպիսի դեպքերում հորս չէր նախատում: Ընդհակառակը՝ մխիթարում էր և հորդորում, որ եզան հետ քաղցր վարվի.

— Բաշոն անասուն է, Եղո՛, ինչքան էլ ծեծես, մեր ցավերը չի հասկանա:

Ամբողջ ընտանիքով շրջապատում էինք մեր սիրուն Բաշոյին, չալ ճակատը համբուրում էինք, շոյում էինք, աղաչում, պաղատում, որ այլևս այդպիսի բան չանի, բեռան տակ տրտինգ չտա, մեր ապրուստը գետին չզարկի:

Բաշոն միայն պոչն էր շարժում և ախորժակով ուտում հանդից իմ նոր բերած կանաչ խոտը:

Մի օր հայրս Բաշոյին ձմերուկ բարձած քաղաքից գյուղ վերադառնալիս է լինում երեք-չորս խառակոնիսցիների հետ միասին: Մերոնք միշտ խմբով էին գնում-գալիս ոչ միայն ձանձրույթից, այլև զանազան փորձանքներից խուսափելու համար: Այս անգամ նրանց հետ է լինում Ծամբարակ-Մանուկը, որ հայտնի էր Խառակոնիսում իր երկար հասակով, երկար բեղերով, կովարար ու պարծենկոտ բնավորությամբ:

Նա իր խուրջինն ուսից վերցնում և ուզում է դնել մեր Բաշոյի բեռան վրա: Հայրս չի համաձայնում:

— Չէ՛, քավո՛ր Մանուկ, առանց այդ էլ աչաղիս բեռը ծանր է:

— Յա՛,— զայրանում է Ժամբարակը:— Տո՛, փլավ չուտող Կարապետի՜ տղա, դու քանի՞ գլխանի ես, որ Մուղսուսի Մանուկի խոսքը զարկում ես գետին:

— Մուղսուսի Մանուկի խոսքը իմ գլխին տեղ ունի,—պատասխանում է հայրս,—բայց Մուղսուսի Մանուկի խուրջինն իմ եզան բեռի վրա տեղ չունի: Բեռը ծանր է: Եզը կարող է տոտինգ տալ: Ջմերուկներս գետին կզարկի ու տունս կավերի:

— Եզդ տոտինգ չի տա,— համառում է Ժամբարակը,— տոտինգը դու ես տալիս: Ես քո...

Եվ Ժամբարակ-Մանուկը իր ծանր խուրջինը դնում է Բաշոյի բեռան վրա: Հերս նրա խուրջինը վերցնում և դնում է գետին, Մանուկը խուրջինը գետնից վերցնում և նորից եզան բեռին է դնում: Այստեղ հայրս կատաղում է, մոռանալով, որ գործ ունի ամենաուժեղ և ամենակովարար խառակոնիսցու հետ, հարձակվում է Ժամբարակի վրա, մի ձեռքով գրկում է նրա ուսերը, մյուս ձեռքով կաղնե մահակի հարվածներ է տեղում նրա գլխին, ծնկներին, ոտքերին: Ժամբարակ-Մանուկն այնքան է շփոթվում, որ չի կարողանում որևէ հակահարված տալ: Ճարահատյալ չոքում է հորս առաջ և աղաչում.

— Խնայի՛ր, քավո՛ր Եղո, ես քո բա՜խտն եմ ընկել:

Դրանք պարտությունը խոստովանելու և հաշտություն խնդրելու խոսքեր էին: Հորս մյուս ուղեկիցները կռվին չեն միջամտում:, Նրանք միայն ուրախանում են հորս խիզախության համար: Դրանից հետո վերջապես պիտի կարճանար Ժամբարակ-Մանուկի լեզուն:

Մինչև գյուղ հասնելը նրանք այդ կռվի մասին իրար ոչ մի բան չեն ասում: Միայն Ժամբարակ-Մանուկն է մի քանի անգամ խնդրում, որ այդ կռիվն իրենց մեջ մնա, որ իր ուղեկիցներն այդ մասին Խառակոնիսում բան չպատմեն:

Հայրս խոստանում է լռել: Բայց նրանց հետ է եղել Խառակոնիսում հայտնի շատախոս ու ստախոս Վռան-Վարդանը, որ «Վռան» մականունն ստացել էր իր հենց այդ հատկությունների համար: Վռան-Վարդանը ճրագով էր ման գալիս այդպիսի դեպք, որ գյուղի բոլոր հոդաներում պատմեր: Նա կարո՞ղ էր Ժամբարակի պարտությունը չտարածել և նրանից կերած վիրավորանքների վրեժը չլուծել:

Դրանից շատ տարիներ հետո, երբ Ժամբարակ-Մանուկը գոմի հոդայում ծալապատիկ նստած պատմում էր, թե երբ ումն է ծեծել, քանի քուրդ է միայնակ ծեծել, ներկաներից մեկը իբրև թե անտեղյակ հարց էր տալիս.

— Քավո՛ր Մանուկ, էն քաղքի ճանապարհին դո՞ւ Եղոյին տփեցիր, թե՞ Եղոն քեզ տփեց:

Ժամբարակ-Մանուկն առանց հարցին պատասխանելու վեր էր կենում և քթի տակ հայհոյելով դուրս գնում:

* * *

Հայրս Բաշոյին սպիտակ ավել բարձած գնացել էր քաղաք: Տատիկս թիզ էր չափում և սպասում նրա վերադարձին:

Սպիտակ ավելը բուսնում էր մեր սարերում: Փափուկ էր, մաքրունակ և դիմացկուն: Ունեվոր վանեցիները սպիտակ ավելով էին մաքրում իրենց խսիրները, կարպետներն ու գորգերը: Դրա համար սպիտակ ավելը շատ հարգի էր Վանում:

Մեր գյուղը գտնվում էր Վանից մոտ հիսուն կիլոմետր հեռավորության վրա: Ոտքով մեկ օրվա ճանապարհ: Եթե հայրս, իր սովորության համաձայն, մթնալույսով դուրս էր եկել քաղաքից, ապա կեսօրից հետո պետք էր տուն հասած լիներ: Այնինչ արևը մոտենում էր մայրամուտին, բայց հայրս չկար: Տատիկիս թիզը չէր հասնում մատների ծայրին, և նա ախուվախ էր անում.

— Տղիս մի փորձանք է պատահել, մեր գլխին սև օր պիտի գա:

Մեր գլխին սև օր չեկավ, բայց եկավ սև եզ:

Այո՛, ուղղակի սև եզ: Արևմտոցի ժամանակ հայրս նախրատեղի կողմից երևաց՝ առջևից քշելով մի սև եզ:

— Վա՜խ,— բացականչեցին մայրս, տատս և հորաքույր Ալմաստը միաբերան:—Էդ ի՞նչ սև եզ է:

— Մեր եզն է,— ինչ-որ մեկի հասցեին բարկացած պատասխանեց հայրս,— օգնեցե՛ք բեռը ցած բերենք:

— Ո՞ւր է մեր Բաշոն,— տագնապով հարցրեց մայրս:

— Բաշո՞ն,— հորս ձայնը զայրույթից եռաց...— Ես Բաշոյի տիրու հերը... տոտինգ տվեց ու մազ մնաց բեռը գետին զարկեր: Ես էլ փոխեցի քրդի էս խեղոք սև եզան հետ:

Հայրս գոռում էր, բայց ես տեսնում էի, որ նա շատ է կոտրված: Նա վախենում էր մորս կարծիքից և դրա համար խղճալի հարցական հայացքով նայում էր նրա երեսին:

— Մեր կարմիր օրը անցրել ես,— ասաց մայրս:

— Քուրդը սև եզան վրա ինձ մի փուշի էլ տըվեց,— փուշին գրպանից հանեց և մորս աչքի առաջ թափահարեց իմ հայրը:— Տե՛ս, ի՞նչ փուշի է, թա՜փ-թազա:

Մայրս փուշիի վրա չնայեց: Չնայած նա վաղուց էր երազում, որ ամուսինը փուշի ձեռք բերի՝ ագիզ



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԻՆՑ*

# ԲԱԼԼԱԴ ԿԱՐՄՐԱԽԱՅՏ ՁԿԱՆ ՄԱՍԻՆ

Արփա գետում է խայտում
Այդ ձկնիկը կարմրախայտ,
Մինչ Արաքս է ճամփորդում
Լողակներով շողացայտ:

Երազում է հյուր գնալ
Նա իշխանին Սևանի,
Կապույտ լճում լողանալ,
Լեռների մեջ հայրենի:

Ու կդառնա իրական
Այդ երազը լուսնի տակ,
Կապույտ դնչով այդ ձկան
Երազներն էլ կառնեն կյանք:

Երբ փորատումն ավարտեն
Արփա-Սևան ջրանցքի,
Երազները կառնեն թև,
Ու կլողա նա հանգիստ:

Բետոնապատ գետնանցքով
Արփայի հետ կգնա,
Կգնա մութ ճամփեքով
Դեպի գիրկը Սևանա:

Եվ իշխանները հպարտ՝
Դոլակներում լճակի,
Ձկնիկներին կարմրախայտ
Հյուր կընդունեն հրճվագին:

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

օրերին քոլոզի շուրջը փաթաթելու համար: Դա մեր գյուղում համարվում էր տղամարդու արդուզարդի ամենաշքեղ մասը: Ես էլ շատ էի սիրում, երբ տղամարդիկ քոլոզի շուրջը սև մետաքսի փուշի էին կապում և ծոպերը կախում ճակատի, ականջների և ծոծրակի վրա: Ես ինքս էլ էի երազում, որ հայրս փուշի կապեր: Բայց այդ պահին ես էլ սիրտ չունեի այդ փուշիով ուրախանալու:

— Ա՛յ որդի,—մղկտաց տատիկս,—բա էդ գո՞րծ է, որ դու արել ես... Ախար մեր Բաշոն տասը հատ քրդի սև եզ արժեր:

— Ա՜խ, Եղո՛, Եղո՛...—բացականչեց հորաքույր Ալմաստը:

Ես լալիս էի: Մեր տունը սուգ էր ընկել: Մեր օրն իսկապես որ սևացել էր:

Զմեռուկի բեռը սև եզան մեջքից վայր առան, տարան տուն: Հայրս ներս մտավ, քոլոզը գլխից հանեց, և նոր մայրս նկատեց նրա ճակատի վրա արյան հետք.

— Էդ ի՞նչ արուն է, Եղո՛...

Հայրս պատմեց եղելությունը: Մեր կարմիր գեղեցիկ աչառը քրդի սև դախ եզան հետ փոխանակելուց հետո, հայրս ճանապարհը շարունակում է դեպի գյուղ: Քրդերն էլ իրենց բեռների կարավանը քշում են դեպի Վան: Նրանք նոր էին անցել բլուրի ետևը, երբ չորս քուրդ արագ վերադառնում են, հասնում հորս ետևից և եզը ետ են պահանջում:

— Ես եզան դիմաց եզ եմ տվել,—պատասխանում է հայրս:

— Մե՞զ ինչ,—ասում են քրդերը:—Դու քո եզը տվել ես ուրիշին: Իսկ սա մեր եզն է, նրա եզը չի:

Հայրս անմիջապես գլխի է ընկնում, որ քրդերը պատրվակ են փնտրում եզն իրենից պարզապես խլելու համար: Արագ վերցնում է եզան վրայից իր կարկատած հաստ կաբան, փաթաթում է ձախ ձեռքին, վահանաձև բռնում է գլխի դեմ, աջ ձեռքով կաղնե մահակի հարված է հասցնում քրդերից ամենախոշորին և գետին տապալում: Մյուս քուրդը ձեռքի փայտով խփում է հորս գլխին, բայց հայրս իր կաղնե մահակով նրան էլ է գետին փռում: Մյուսները փախչում են: Հայրս ուշագնաց քրդերին ուշքի է բերում և նոր նկատում, որ իր գլուխը կոտրված է: Քրդերը հորիցս ներողություն են խնդրում, իրենց քիրվայությունն (բարեկամությունը) են առաջարկում և հեռանում են: Մանավանդ, որ Վանի կողմից կռվի տեղին են մոտենում մի խումբ արչակցի հայեր: Նրանք հորս գլխի արյունը մաքրում են, վերքի վրա այրված լաթի մնձուր են դնում և նրա հետ

ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ

# ՎԱՅՐԻ ՄԵԽԱԿՆԵՐԻ ԲՈՒՐՄՈՒՆՔԸ

Տղան հեծանիվը կանգնեցրեց հինավուրց տաճարը շրջապատող պարսպի դռնակի մոտ, վերցրեց ետևի նստատեղի վրա կապված փոքրիկ կապոցը և մտավ ներս: Պահակի տնակում չգտնելով նրան, ձայն տվեց.

— Որտե՞ղ ես, պա՛պ:

Բակի խորքում, ծառերի տակից պապը արձագանքեց նրան, և տղան կապոցը ձեռքին վազեց այնտեղ:

— Պա՛պ, ուտելիք եմ բերել:

— Ապրե՛ս, տղա՛ս:

Նա ամեն օր ուտելիք էր բերում պապին, օգնում նրան խոտ հավաքելու և երեկոյան վերադառնում էր գյուղ: Պապը ամառ-ձմեռ այդտեղ էր ապրում, պահպանում էր վանքը, նրա մամռոտած քարերն ու փոքրիկ թանգարանը: Ամեն օր տուն վերադառնալիս տղան ծաղիկների մի փունջ էր տանում հետը, մտածելով, որ գուցե ճանապարհին հանդիպի իրենց դասարանի ամենալավ աղջկան՝ Սոնային և ծաղիկները կտա նրան: Մի երկու անգամ ճանապարհի վրա տղան տեսել էր նրան, բայց ամաչել էր ծաղիկները տալ ու հետո, նրանից հեռանալիս, ծաղիկները ձորն էր գցել ու տխուր մի երգ սուլելով՝ գնացել տուն:

Այսօր նա մտադիր էր տաճարի դիմացի բլրալանջից վայրի մեխակներ տանել: Եթե Սոնային հանդիպի ճանապարհի վրա, անպայման կտա ծաղիկները և կասի. «Սոնա՛, քեզ համար եմ բերել, դու լավ աղջիկ ես...» Կասի ու կգնա:

— Աշո՛տ, ջո՛ւր տուր,— նախաճաշելուց հետո խնդրեց պապը:

Տղան անմիջապես կուժը մոտեցրեց նրան:

Պապը խմեց, ջրակալած աչքերը ճպճպացնելով՝ նայեց տաճարի թիկունքից ձգվող հեռու սարերին, հորիզոնի ծալքերին և մտքի մեջ ինչ-որ բան կրկնելով՝ նիրհեց:

Պապին քնած թողնելով, տղան դուրս եկավ տաճարի բակից և քայլերն ուղղեց դեպի դիմացի բլրալանջը: Վայրի մեխակները շատ էին, շա՛տ-շատ: «Հիմա տեսնես ի՞նչ է անում Սոնան»,— անցավ տղայի մտքով: Հեռվից նայեց գյուղին, նրանց տունը տեսնելու ցանկությամբ, բայց ոչինչ չերևաց: Ա՛յ, թե այսօր հանդիպի նրան, անպայման ծաղիկները կտա ու կասի վաղուց մտքում պահած բառերը. «Սոնա՛, քեզ համար եմ բերել, դու լավ աղջիկ ես»: Տղան մեխակներից մի մեծ փունջ կապեց,

---

շարունակում ճանապարհը:

— Վա՜խ, վա՜խ, վա՜խ,— այս պատմությունը լսելուց հետո բացականչեցին մայրս, տատս և հորաքույր Ալմաստը միաբերան:

— Ի՞նչ էիր քրդերի հետ կպչում, անաստվա՜ծ,— սարսափի և պարծանքի շեշտով ասաց մայրս:

— Եզս խլում էին, է՜,— պատասխանեց հայրս:

— Բա որ սպանեի՞ն քեզ, տներս կքանդվեր:

— Բա ի՞նչ անեի: Ախար եզս խլում էին:

— Թող խլեին:

— Ի՞նչ ես ասում, Կարոյի՛ աղջիկ: Բա իմ տղամարդկությունն ի՞նչ էր եղել: Խաղք ու խայտառակ պիտի լինեի Խառակոնիսի մեջ:

Ես պարծանքից իմ կուրծքը ուռցրի: Դե թող մեր թաղի տղերքն իմանան, թե ես ինչ քաջ հայր ունեմ:

Թաղի տղերքը իմացան, բայց վատ բան իմացան: Նրանք չէին լսել կամ չէին հավատում, որ հայրս միայնակ չորս քրդի է հաղթել, բայց ամբողջ գյուղում տարածվեց, որ մեր սև եզը բեռան տակ նստում է: Ինչպե՞ս էր տարածվել, ո՞վ էր տարածել, կարևոր չէր: Կարևորն այն է, որ դա ճիշտ էր, և հայրս էլ խոստովանեց: Իսկ բեռան տակ նստող եզ կամ լծի տակ նստող գոմեշ ունենալը Խառակոնիսում համարվում էր մեծ անպատվություն:

— Բա դու խելք չունե՞իր,— ասաց մայրս,— որ թոսուն կարմիր ջահել եզը տվիր ու քրդից առար բեռան տակ նստող դախ եզ:

— Ա՜յ կնիկ, ես ի՞նչ գիտեի, թե սա բեռան տակ նստող է,— բորբոքվեց հայրս:

— Անխելքությունն անում ես, հետո էլ ասում ես՝ չգիտեի,— խայթեց մայրս:

Հայրս խորապես խոցվեց և դիմեց բռունցքների օգնությանը:

— Եղո՜, Եղո՜, Եղո՜,— միջամտեցին այս անգամ տատիկս և նույնիսկ հորաքույր Ալմոն,— ի՞նչ ես անում: Համ բեռան տակ նստող դախ եզ ես բերել տուն, համ էլ տփո՞ւմ ես կնկան...

Հայրս այստեղ զինաթափվեց և դուրս գնաց:

Չափ ու սահման չկար իմ վշտին: Դե սրանից հետո երևա թաղի տղերքի մեջ...

Հորս կատարած քաջագործության մասին բան չէին ասում, չնայած որ արչակցի Խոժոյենց Միսակը եկել էր Խառակոնիս և այդ վկայել. հոլովում էին միայն մեր խայտառակությունը.

— Եղոն իր թոսուն աչառը տվել, քրդից առել է դախ սև եզ, որ նստում է բեռան տակ:

հոտոտեց, ապա փունջը բռնեց իրենից հեռու՝ նայեց, դուրը եկավ: «Արժե տալ Սոնային»,— ասաց մտքում:

Երբ վերադարձավ, պապը դեռ քնած էր:

— Արթնացի՛ր, պա՛պ:

Ծերունին բաց արեց աչքերը, կրկին հայացքն ուղղեց սարերին, հորիզոնին, մայր մտնող արևին, ինչ-որ բան կրկնեց մտքում և դարձավ տղային.

— Չորացած խոտը լավ բուրմունք ունի:

Տղան չմտածեց ծերունու խոսքերի վրա, այդ պահին ոչինչ չհասկացավ:

Նա ցտեսություն ասաց ծերունուն, վերցրեց ծաղիկները, մուտքի մոտ նստեց հեծանիվն ու իջավ գյուղ տանող ճանապարհով:

Պապը հայացքով ուղեկցեց տղային: Իսկ քամին չորացած խոտի բուրմունք էր բերում, և ծերունին գոհ էր դրանից:

Գյուղ տանող ճանապարհին տղան մտածում էր, որահա ուր որ է կհանդիպի Սոնային, կտա ծաղիկները և կասի մտքում պահած խոսքերը:

Դասարանում բոլորը սիրում էին Սոնային և նույնիսկ դասամիջոցներին տղաները հաճախ խոսում էին նրա մասին: Իսկ ինքը երբեք չէր միանում նրանց և ներքուստ բարկանում էր այդ տղաների վրա:

Տղան դանդաղ էր քշում հեծանիվը, ուշադիր նայելով դաշտերին, ծառերին, թփերին: Գուցե Սոնան հիմա այստեղ ծաղիկներ է հավաքում կամ հատապտուղ: Եթե հանդիպի Սոնային, անպայման կմոտենա, կբարևի, կասի. «Սոնա՛, քեզ համար մեխակներ եմ բերել, վերցրո՛ւ»:

Արդեն մոտենում էր գյուղին, բայց Սոնան չհանդիպեց...

Երբ հասավ ձորի բերանին, որտեղից ճանապարհը արդեն թեքվում էր դեպի իրենց տուն, կանգ առավ: Մեխակների փունջը մոտեցրեց քթին և հոտոտեց: Ինչ լա՜վ էին բուրում վայրի մեխակները: Երնեկ հանդիպած լիներ Սոնային: Հետո կտրուկ մի շարժում արեց և ծաղիկները նետեց ձորը:

Վաղը ձորի քարերի վրա, արևի տակ կչորանան վայրի մեխակները, նախորդ օրերի բոլոր ծաղկեփնջերի պես:

«Ոչինչ, վաղը էլի կբերեմ,— ասաց մտքում,— ամեն օր կբերեմ, մինչև հանդիպեմ Սոնային: Ամեն օր, ամեն օր...»



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄՈՒԿԸ ԴԱՌՆՈՒՄ Է ԿԱՏՈՒ, ՇՈՒՆԸ՝ ՎԱԳՐ ԵՎ ԱՅԼՆ...

Շատ ճիշտ է ասված, որ մկան սիրտ ունեցող վագրը չպետք է հանդիպի կատվին:

Մի օր, անտառի վրայով ագռավ էր թռչում՝ կտուցով մի մուկ պահած: Մեկ էլ մուկն ընկնում է նրա կտուցից, գալիս հայտնվում մի մարդու ոտքերի առաջ: Այդ մարդը կախարդ է լինում:

Մարդը տեսնելով փոքրիկ կենդանուն, խղճում է նրան, տանում է իր տուն ու կերակրում:

Մի օր մուկը դուրս է գալիս տնից և հանկարծ հանդիպում է մի կատվի: Խեղճ մուկը սարսափահար վազելով՝ իսկույն ետ է վերադառնում և թաքնվում մի անկյունում: Նա դողդողում է վախից:

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես դողում,—հարցնում է մարդը:

— Օ՜հ, տե՜ր իմ,—պատասխանում է մուկը,—մեր տան մոտ ես հանդիպեցի մի կատվի ու այնքան վախեցա, որ քիչ մնաց ուշաթափվեի:

— Լավ,—ասում է մարդը,—սրանից հետո կատուներին տեսնելիս դու չես վախենա: Հիմա գնա քնի՛ր: Առավոտյան դու ոչ թե մուկ, այլ կատու կլինես:

Կախարդը կատարում է իր խոստումը: Լուսաբացին մուկը արթնանում է մի մեծ կատու դարձած:

Երջանիկ զգալով իրեն, կատու դարձած մուկը դուրս է վազում տնից: Հանկարծ նա նորից հանդիպում է մի կատվի:

Խեղճ մուկը մոռանալով, որ ինքն այլևս մուկ չէ, այլ մի մեծ կատու, փախուստի է դիմում և շնչակտուր տուն ընկնում:

— Ի՞նչ է պատահել, ո՞վ է այս անգամ քեզ վախեցրել,— հարցնում է մարդը:

Կատու դարձած մուկը ամաչում է պատմել իրականությունը: Չէ՞ որ անպատվաբեր էր խոստովանել, որ ինքը կատու լինելով հանդերձ՝ վախեցել էր մի ուրիշ կատվից:

— Անտառում,—ասում է նա,—ես հանդիպեցի մի շան: Շունը վազեց իմ հետևից: Հազիվհազ ինձ հաջողվեց փրկվել:

Այս անգամ մարդն ասում է.

— Գնա քնի՛ր, առավոտյան դու մի մեծ, ուժեղ շուն դարձած

կլինես և այսուհետև շներից չես վախենա:

Հաջորդ օրը, լուսաբացին, շուն դարձած կատուն բարձր հաչելով, տնից դուրս է գալիս և հանկարծ մի մեծ ծառի մոտ նորից հանդիպում է կատվին: Կատուն ենթադրելով, որ շունը պատրաստվում է հարձակվել իր վրա, ուժեղ մլավում է: Լսելով կատվի մլավոցը, «շունը» դողդողալով փախչում և տուն է վերադառնում:

— Այդ ումի՞ց ես վախեցել այս անգամ,—հարցնում է մարդը:

«Շունը» դարձյալ ամաչում է տիրոջը հայտնելու ճշմարտությունը, ուստի պատասխանում է.

— Օհ, տե՛ր իմ, մեր տան մոտ ես հանդիպեցի մի վագրի: Դուք չեք կարող պատկերացնել, թե ինչ հրաշքով ինձ հաջողվեց փրկվել նրա սուր ժանիքներից:

— Շատ լավ,— պատասխանում է մարդը,— վաղվանից դու վագր կդառնաս և այսուհետև վագրերից չես վախենա:

Կախարդը կատարում է իր խոստումը: Հաջորդ առավոտ վագր դարձած շունը մտածում է.

— Ինձ չի սազում մնալ տանը. որպես կենդանիների թագավոր իմ տեղը հիմա անտառն է: Պատկերացնում եմ, ինձ որ տեսնեն բոլոր կենդանիները ինչպե՜ս են սարսափահար փախչելու:

Եվ «վագրը» դուրս գալով տնից՝ անտառ է գնում ու հանկարծ նորից հանդիպում է մի կատվի: Խեղճ կատուն այնքան շատ է վախենում վագրից, որ փշաքաղվում է, նրա մեջքը աղեղաձև կորանում է և աչքերը պսպղում են:

— Վա՜յ ինձ,—մտածում է կատուն:—Միտք չունի փախուստի դիմել: Մի՞թե ես կարող եմ փրկվել վագրի ճանկերից:

Սակայն մկան սիրտ ունեցող վագրը, երբ տեսնում է կատվի՝ մթության մեջ պսպղացող խոշոր աչքերը, նորից լեղաճաք տուն է վազում և թաքնվում ամենամութ անկյունում: Նրա ատամները կափկափում էին ահից:

— Ինչո՞ւ ես դողում, օ՜հ, վա՜գր, մի՞թե մեր անտառներում գոյություն ունի քեզանից ավելի ուժեղ կենդանի:

— Օ՜հ, այո՜,—պատասխանում է վագրը:

— Իսկ ո՞վ է նա,—հարցնում է մարդը:

— Նա, նա... կատուն,—շշնջում է վագրը:

Այն ժամանակ կախարդի համար ամեն ինչ պարզ է դառնում.

— Մկան սիրտ ունեցող վագրը կատվից էլ թույլ է,—եզրակացնում է նա: Ով մկան սիրտ ունի, թող մուկ էլ մնա:

Եվ նորից վագրին մուկ է դարձնում:

*Անգլ. թարգմ.* ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԻ

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

# ԶՐՈՒՅՑ ԶՐՈՒՅՑԻ ՄԱՍԻՆ

## 1. ՆԱ, ՈՎ ԿԱՐՈՂԱՆՈՒՄ Է ԼՍԵԼ

Որո՞նք են ամենահին ուսումնական հաստատությունները: Նրա՞նք, ուր մարդիկ սովորում էին գյուղատնտեսություն, բժշկություն կամ ռազմական արվեստ: Ո՛չ: Առաջին ուսումնական հաստատություններից են եղել այն դպրոցները, ուր սովորել են հռետորություն, դպրոցներ, ուր երիտասարդները սովորում էին խոսել հակիրճ, հետաքրքիր և արտահայտիչ: Հները լավ գիտեին, որ զրույց վարելու կարողությունն արվեստ է: Զուր չէ, որ առաջին խրատն այն մասին, թե ինչպես պետք է խոսել, մենք գտնում ենք հնագույն շումերի կավե սալիկների վրա. «...Բերանդ լայն մի՛ բացի, պահպանի՛ր շրթունքներդ, մի՛ խոսի անմիջապես: Եթե բորբոքված ես, ստիպված կլինես շատ շուտ զղջալ անմտաբար ասած խոսքիդ համար...»

Երբ հայտնաբերվեց Ամերիկան և սանձազերծ հորդաները սուրացին նոր երկրներ նվաճելու, նրանք Կենտրոնական Ամերիկայում շատ յուրօրինակ քաղաքակրթության հանդիպեցին: Մեքսիկայի այն ժամանակվա բնակիչները չգիտեին, օրինակ, թե ինչ բան է սայլը, նույնիսկ անիվը: Բայց նրանց արդեն հայտնի էր խոսքի մեծ իմաստը և նրանք ոչինչ այնպես չէին գնահատում, որքան զրույց վարելու կարողությունը: «Հարկավոր է խոսել հանգիստ,— կարդում ենք հին մեքսիկական ժամանակագրություններից մեկում,— մի՛ խոսի շատ արագ, մի՛ տաքանա, մի՛ բարձրացնի ձայնդ, խոս-

քը պետք է լինի պարզ և հանգիստ»:

Մոլեգին աստվածներին արյունալի զոհեր մատուցող, իրենց դաժանությամբ հայտնի մարդիկ, մեծագույն զգուշությամբ էին վերաբերում ասված խոսքին, վախենալով վիրավորել մերձավորին: «Երբ տեսնում կամ լսում ես որևէ բան,— շարունակում է ժամանակագրությունը,—ցույց տուր, թե քեզ ոչինչ հայտնի չէ, և լռի՛ր, մանավանդ եթե դա մեկնումեկին վերաբերող վատ բան է»:

«Զրույց վարելու նրբության» մասին տրակտատներ են գրել նաև մուսուլման հեղինակները: Արևելքում հատկապես մեծ ուշադրություն էին նվիրում այդ արվեստին:

...Մեծ Չինաստանի դեսպանը զայրացած էր: Զայրույթից դեմքը կնճռոտվել և ռունգերը լայնացել էին: Նրան՝ երկրային կայսրության բանբերին, այդ ոչնչությունները հանդգնում են մերժել նոր ձիեր տալ: Ֆերգանայի ավագանին խորին հարգանքով կրկին բացատրեց մեծարգո դեսպանին, որ դժվար, շատ դժվար է նոր ձիեր տալ նրան և իր շքախմբին: Նրանք չեն ուզում խախտել հյուրընկալության օրենքները, բայց թող արդարամիտ լինի բանբերը: Չէ՞ որ նրա շքախումբը մի քանի հարյուր մարդուց է կազմված: Երկնքի որդու դեսպանը, սակայն, չկամեցավ արդարամիտ լինել: Ըստ տարեգրի, նա խոսակցության ընթացքում դուրս եկավ պարկեշտության սահմաններից և հեռացավ, առանց նրանց պատասխանը լսելու: Հեռանալ, առանց լսելու դիմացինի խոսքը՝ մեծագույն վիրավորանք էր: Քանդականախշ բարձր դռները հազիվ էին փակվել դեսպանի ետևից, երբ այնտեղ մնացածները հասկացան, որ հեռացողը այդ պահին ստորագրել էր իր մահվան դատավճիռը, որովհետև նման վիրավորանքը կարող էր քավվել միայն մահվամբ: Եվ մինչդեռ դեսպանը մեծաթիվ շքախմբով և պահակախմբով, քարավանների արահետով դեպի սահմանն էր շարժվում, անապատի ավազներն ու լեռները կտրելով՝ Ֆերգանայից սուրացող հեծյալները փակեցին նրա ճանապարհը: Նրանք պետք է ի կատար ածեին վիրավորված ավագանու դատավճիռը: Յու քաղաքում վրեժխնդիր եղան դեսպանից: Նա կյանքով հատուցեց այն բանի համար, որ իրեն թույլ էր տվել մոռանալ բարեկիրթ վարմունքի կանոնները:

Սեփական անձի առավելությունը, բացառիկությունն ընդգծելու համար երբեմն նույնիսկ «անարժանի հետ» չխոսելու հատուկ օրենք էր սահմանվում: Այսպես օրինակ, Իվան Ահեղի օպրիչնիկները երդում էին տալիս չխոսել զեմստվոյականների հետ: «Հաճախ էր պատահում,— գրում է ժամանակակիցը,— որ երբ նման երկուսին նկատում էին խոսելիս, սպանում էին անմիջապես, ինչ դիրքի տեր էլ որ լինեին»:

Իսկ հռոմեական պատրիկներից մեկը՝ Պալանտուսը, որին Ներոնը պարտական էր իր գահով, իր ծառաների հետ բացատրվում էր ձեռքի և գլխի շարժումներով: Երբ հարկավոր էր լինում շատ կարևոր կարգադրություն անել, գրավոր հրաման էր տալիս: Ամբողջ կյանքում նա այդպես էլ չիջավ իր ծառաներից որևէ մեկի հետ խոսելու աստիճանին:

Խոսողին չլսելու ձևը լավ հայտնի է պառլամենտական պրակտիկայում: Օրինակի համար, չկա հակառակորդի խոսքի նկատմամբ արհամարհանքն արտահայտելու ավելի լավ միջոց, քան նրա խոսքի ամենակրակոտ պահին քնելը: Պառլամենտական մեծամասնության լիդեր, հայտնի լորդ Նորտը այդպես էլ վարվում էր: Երբ հակառակ կողմի հարձակումը հասնում էր շիկացման ամենաբարձր կետին և հերթական հռետորը խեղդվելով ամբիոնից կատաղի մեղադրանքներ էր տեղում, հանկարծ լսվում էր հանդարտ ֆսֆսոց: Լորդ Նորտը անխռով քնած էր: Խոսակցին անուշադրությամբ նվաստացնելու միջոցը, դժբախտաբար, հասել է մինչև մեր օրերը: Ընդ որում ոչ ամենևին պառլամենտական ձևով:

— Օրիո՛րդ, պանիր ունե՞ք,— ասենք թե հարցնում եք կաթնեղենի բաժնում, միամտաբար կարծելով, թե ձեզ կպատասխանեն: Բայց շատ ժամանակ չի հարկավոր, որպեսզի համոզվեք, որ ձեր հույսերն իզուր են: Ստիպված եք հարցը կրկնել երկու, նույնիսկ երեք անգամ, մինչև որ վերջապես կարժանանաք միավանկ պատասխանի:

Ինչո՞ւ են երբեմն այդպես համառորեն լռում հաճախ բավականին հաճելի օրիորդները, որոնք աշխատանքից դուրս զրույցի մեծ սիրահարներ են:

Դժբախտաբար, դա ունի իր բացատրությունը: Հին ժամանակներից մեզ ժառանգություն է մնացել ինչ-որ մի պատկերացում, որ մինչև հիմա պահպանվում է առանձին մարդկանց գիտակցության խորքերում: Այդ պատկերացումը հանգում է այն մտքին, թե որքան մարդը նվաստացնի մեկ ուրիշին, այնքան ինքը կբարձրանա շրջապատողների աչքում: Այդպես էր վարվում, օրինակ, Օխոտնի Ռյադ փողոցի վաճառականը: Որքան շատ էր հաջողվում նրան նվաստացնել որևէ մատուցողի, մի խեղճ չինովնիկի կամ իրենից սոցիալապես ցած կանգնած մարդու, այնքան «մեծ աղա» էր զգում ինքն իրեն: Նույն չափանիշին չի՛ հանգում արդյոք այն մարդու վարքագիծը, ով միտումով չի



Վարդուհի Հարությունյանը սովորում է Երևանի № 123 դպրոցի յոթերորդ դասարանում: Գրում է պատմվածքներ և բանաստեղծություններ: Ստորև տպագրում ենք Վարդուհու բանաստեղծություններից երկուսը:

## ԵՐԱԶԵԼ ՈՒ... ՀԱՎԱՏԱԼ

Ա՜յ, տեսնո՞ւմ ես՝ ես կարող եմ լռել...
լռել ու երազել,
Երազել մշուշում, երազել հավերժ
ամեն ինչի մասին:
Ու հավատալ ինչ-որ լավ բանի,
հավատալ...
Հավատալ, որ աշխարհում քեզ համար
կա մի բարի կախարդ,
Որը քեզ կտա ամեն ինչ, ինչ ցանկանաս՝
Ե՛վ սեր, և՛ երջանկություն, ամեն ինչ՝
ինչ ցանկանաս:
Ու հետո այդ բարի կախարդը քեզ
կդարձնի իր պես:
Եվ դու էլ մեկ ուրիշին կտաս
Ե՛վ սեր, և՛ երջանկություն:
Ու նա քեզ կհիշի հավերժ,
հավիտյան
Երազել ու... հավատալ:

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



## ԿԱՊՏԱԴԵՂՆԱՎՈՒՆ ԱՇԽԱՐՀ

Փոքրիկը նկարում էր լուսին ու արև,
Չգիտակցելով, որ երբ արև կա, չկա լուսին,
Նա նկարում էր արևոտ օր
Ու ծխնելույզից ելնող ծուխ,
Չգիտակցելով, որ այդպես չի լինում,
Իսկ երբ ուղղեցին՝
Նա պնդեց, որ կա ուրիշ աշխարհ,
Որտեղ լուսին է ու արև,
Որտեղ արև է ու ծխնելույզից ելնող ծուխ:
Ու ինքդ էլ կարծես մանկացար
Ու հավատացիր, որ ինչ-որ տեղ
Կա կապտադեղնավուն աշխարհ,
Կապտադեղնավուն աշխարհ:



պատասխանում, երբ դիմում են նրան, ով իրեն պահում է այնպես, կարծես թե զրուցակիցը ոչնչություն է: Նման մարդու ողորմելի պատկերացմամբ թվում է, թե դրանով շեշտում է սեփական անձի կարևորությունը, հաստատում հարգանքն իր անձի հանդեպ:

Ինչո՞ւ ենք խոսում այս բոլորի մասին: Որովհետև այն կարճ հարց ու պատասխանը, որ տեղի է ունենում, երբ դուք մտնում եք որևէ հիմնարկություն կամ խանութ, նույնպես զրույց է: Եվ այդ զրույցը, ինչպես և ամեն մի մարդկային հարաբերություն մեր հասարակության մեջ, պետք է հիմնվի փոխադարձ հարգանքի վրա: Իսկ ամեն մի, նույնիսկ ամենակարճ զրույցը, սկսվում է զրուցակցին լսելու կարողությունից:

«Մեծ անքաղաքավարություն է խոսողին կատարյալ ուշադրությամբ չլսելը: Ոչինչ չի կարող լինել ավելի կոպիտ, տհաճ և ավելի քան աններելի, քան իրական կամ թվացյալ անուշադրությունը զրուցակցի հանդեպ»: Այս տողերն առնված են լորդ Չեստերֆիլդի «Նամակներ որդուս» հռչակավոր գրքից: Դեռևս 18-րդ դարում գրված այդ «Նամակները» կիրթ վարվելաձևի յուրօրինակ հանրագիտարան էր: Եվ այսպես, որքան էլ պարադոքսալ թվա, զրուցելու արվեստը միշտ սկիզբ է առել դիմացինին լսելու կարողությունից:

Պատմությունը ճանաչում է մի մեծ մարդու, որ կատարելապես տիրապետում էր զրույցի բարձր արվեստին:

«Նա շատ ուշադիր էր իր հետ խոսող յուրաքանչյուր մարդու հանդեպ և կարողանում էր շատ լավ լսել»:

«Զրույցի ժամանակ նա ամբողջովին կլանված է ձեզանով: Նա լիովին տարվում է զրույցով: Ագահորեն լսում է...»

Նա «ուշադիր լսում էր բոլոր նրանց, ովքեր դիմում էին իրեն»:

«Նա ոչ միայն լսում, այլև կլանում էր զրուցակցի ամեն մի բառը»: Ո՞ւմ մասին է խոսքը: Ո՞վ է այդ մարդը: Դուք ճանաչում եք նրան: Դա Լենինն էր:

(Շարունակելի)

# ՈՎ ԼԱՎ ԳԻՏԵՐ ԻՆՉԸ ԻՆՉՈՒ Է

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. ՀԱՄԼԵՏ ՈՒԴՈՒՄՅԱՆԻ

Դռան կանգը տվին:

— Ո՛վ է,— հարցրեց Լեռնիկը, որ տանը մեն-մենակ նստած դասերն էր պատրաստում:

— Ես եմ, դուռը բա՛ց արա, շուտ...— լսվեց դրսից մեկի շնչակտուր ձայնը:

Բանալին պտտվեց անցքում, փականը չրխկաց ու դուռը շրխկոցով ծեփվեց միջանցքի պատին: Աղմուկով ներս ընկավ Լեռնիկի դասընկերը՝ մանրիկ, խլվլուն աչքերով մի տղա, մածնաշշերով լի ցանցը ձեռքին:

— Հեռուստացույցը միացրո՛ւ, շո՛ւտ,— մածնաշշերը ցած դնելով, հևասպառ ասաց նա:

— Ինչո՞ւ... ի՞նչ կա...

— Մեր թիմային մրցումներն են ցուցադրում: Խանութից դուրս գալիս հիշեցի... Ի՞նչ ես կանգնել, շո՛ւտ միացրու...

Լեռնիկը միացրեց հեռուստացույցը: Քիչ անց էկրանը լուսավորվեց ու երևաց հաղորդավարի դեմքը:

— «Մեր միկրոֆոնը գտնվում է պատանի ըմբշամարտիկների մարզադահլիճում: Դուք կդիտեք...»

— Հիմա ինձ էլ կտեսնես,— ձեռքերն իրար շփելով, հրճվալից վրա տվեց տղան:

Բայց, այ քեզ բա՛ն... Հաղորդավարի ձայնը կամացկամաց սկսեց խռպոտել, դեմքը ծիծաղելիորեն ծռմռվեց, էկրանի վրա արագ փախչող գծիկներ հայտնվեցին, ու պատկերը չքացավ:

— Թո՛ւ,— սրտնեղեց ընկերը,— էս ոնց ես միացրել, հը՞:

— Միացնելն էլ ինչպե՞ս է լինում,— արդարացավ Լեռնիկը:

— Ապա մի է՛ս կողմ քաշվիր,— գործնական տոնով ասաց տղան և սկսեց եռանդով ետ ու առաջ պտտել հեռուստացույցի կոճակները:

Ներսից լսվող խռխռոցը շարունակվում էր, գծիկները իրար ետևից փախչում էին, իսկ պատկերը չկար ու չկար:

— Է՛հ, սա էլ ժամանակ գտավ փչանալու,— փրնթփրնթաց ընկերը ու բռունցքով մի քանի անգամ թրխկացրեց հեռուստացույցի կողին:

— Կամաց, ի՞նչ ես անում,— դժգոհեց Լեռնիկը:

— Մերն էլ է էսպես, հենց մի հատ հասցնում եմ թե չէ, սկսում է աշխատել,— ինքնավստահ ասաց տղան ու մի անգամ էլ ուժգին հարվածեց:

Հեռուստացույցը մի թույլ խռռոց արձակեց ու համրացավ:

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

## ԻՆՁ ԱՍՈՒՄ ԵՆ

Հանդի հովն եմ սիրում ես,
Նրտի ծովն եմ սիրում ես,
Կարծես խոսում են ինձ հետ
Հավք ու հովիտ, ծառ ու սեզ:

Ահա առուն վազում է
Ու ինձ կամաց ասում է.
— Պաղ ջրիկ եմ բերել քեզ,
Հազար տաղ եմ բերել քեզ:

Սարն է ասում ինձ ապա.
— Արի դառնամ քեզ ճամփա,
Մինչև գագաթն իմ հանեմ,
Աստղերի մոտ քեզ տանեմ:

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

## ԵՍ ՋՐՎՈՐ ԵՄ

Ջրվոր եմ, ջրվոր.
Ամռանն ամեն օր
Փողքերս ծալած,
Ձեռքս բահ առած,
Մի թմբից արագ
Մյուսն եմ թռչում,
Հողը, տե՛ս, պապակ,
Ջուր է պահանջում:
Ու զովանում է
Այգին իմ ջրով,
Ողկույզն է լցվում
Անուշ հյութերով,
Վազերն են երգում
Կանաչ շուրթերով...

— Հանգստացա՞ր,— հուսահատ ասաց Լեռնիկը:

— Էս ինչի՞ էսպես պապանձվեց, հը՞:

— Քո կողքին էլ որ այդպես հասցնեին...

— Դրանից չի, չէ՛: Երևի ներսում ինչ-որ բան... Դու մի՛ անհանգստանա, ես հիմա...

Եվ նա սենյակի անկյունում գտնվող փոքրիկ սեղանի վրա դրված հեռուստացույցի ետևի մասը տնքալով շրջեց դեպի իրեն:

— Ի՞նչ, ուզում ես քանդե՞լ:

— Հո էսպես չէ՞նք թողնելու, պիտի կարգի բերե՞նք, թե՞ չէ:

— Սպասի՛ր,— տագնապով վրա բերեց Լեռնիկը:— Սպասի՛ր, գնամ կանչեմ մեր հարևանի տղային:

— Ի՞նչ գործ ունի էստեղ ձեր հարևանի տղան:

— Ռադիո-ակումբի անդամ է, նա խսկույն կարգի կգցի:

— Է՛հ, սիրում ես ամեն մի հասարակ բանի համար մարդկանց խնդրել: Ռադիո-ակումբի անդա՛մ, մե՛ծ բան... Ե՛ս, ախպե՛րս, ռադիո-ակումբի անդամ չեմ, բայց քո էդ հարևանի տղայից ավելի լավ եմ հասկանում ինչը ինչոց է:

— Դու գոնե սխեմայի՛ն նայիր, նոր հետո...— ասաց Լեռնիկը՝ ծալծլված մի թուղթ փռելով նրա առաջ:

— Սա ի՞նչ է:

— Հեռուստացույցի ներքին սխեման է:

— Ես շատ լավ տեսնում եմ, թե ինչ է, բայց ո՞ւր ես քիթս խոթում:

— Մեր հարևանի տղան միշտ էլ սխեմայով է հեռուստացույցը կարգի գցում:

— Դե՛, գիտե՞ս ինչ... ցուցամոլի մեկն է քո էդ հարևանի տղան, ա՛յ թե ինչ: Ջհեր է թափում: Ես, ախպե՛րս, առանց էս խզբզանքների էլ գիտեմ ինչը ինչոց է: Պտուտակահան ունե՞ք:

— Ունենք:

— Դու, ավելի լավ է, գնա պտուտակահա՛նը բեր:

Լեռնիկը դժկամորեն վեր քաշեց քիթն ու գնաց պատշգամբ: Մինչև նա կվերադառնար, տղան հասցրեց բաց անել հեռուստացույցի ետևի ստվարաթղթե կափարիչը:

Լեռնիկը եկավ:

— Բայց տես, հա՛...— պտուտակահանը տալով տղային ասաց նա,— ամեն ինչ քանդուքարափ չանես:

— Լսի՛ր,— վիրավորված ոտքի թռավ ընկերը:— Եթե դու նորից սկսես տեղի-անտեղի պտպտալ, կթքեմ ու կգնամ: Հիմա հաղորդումը գնում է, գուցե և ինձ են ցուցադրում, իսկ ես...

— Դե լա՛վ, լա՛վ,— ընկճված տեղի տվեց Լեռնիկը ու, շունչը պահած, սկսեց հետևել տղայի շարժումներին:

Մի քանի րոպե անց, փոքրիկ սեղանի սփռոցի վրա բազմաթիվ պտուտակներ, լամպեր ու այլ մասեր հայտնվեցին: Երբ հեռուստացույցի ներսում այլևս քիչ



բան մնաց, տղան հանկարծ ջրում սուզված խցանի նման վեր թռավ տեղից:

— Տեսա՞ր,— գյուտ արածի պես բացականչեց նա:

— Ի՞նչը:

— Էս բարակ լարը տեսնո՞ւմ ես:

— Տեսնում եմ, կտրված է:

— Բա ես ի՞նչ էի ասում: Ախր պգում էի, չէ՞, որ ներսում ինչ-որ բան կարգին չի:

— Այնքան թրխկացրիր, որ...

— Լեզվիդ կոռ մի՛ տա: Թրխկացնելուց լարը չի կտրվի: Սա էն գլխից էլ կտրված է եղել:

— Դե լավ, շուտ կարգի՛ գցի, հիմի մերոնք կգան:

Տղան մի պահ գլուխը քորեց, նայեց քանդած մասերին, նայեց հեռուստացույցին ու նորից գործի անցավ:

— Ապա մի բռնի՛ր... Սա՛ էլ բռնիր... Սա՛ էլ...

Երբ Լեռնիկի ափը լցվեց պանապան մասերով, նա սարսափած ծղրտաց.

— Ի՞նչ ես անում, ներսում էլ բան չմնաց: Հիմա այսքանը ո՞նց պետք է նորից իրենց տեղը դնես:

— Քո բանը չի, ես շատ լավ գիտեմ ինչը ինչոց է:

Եվ արագ-արագ սկսեց «տեղադրել» հանած մասերը, պտուտակները, լամպերը: Ներսի կտրված լարը միացրեց: Անտեննայի հանած լարն էլ անցկացրեց իր տեղը ու մոտեցավ խրանին:

Հեռուստացույցը համառորեն լռում էր:

— Էս ինչի՞ չի աշխատում, հը՞:

Լեռնիկը պատասխանի փոխարեն ավերված հայացքով նայեց նրան:

— Գուցե հոսանք չկա,— եզրակացրեց տղան, մի քանի անգամ վառելով ու հանգցնելով սենյակի լույսը:

— Կարծես ծուխ է դուրս գալիս,— հոտոտեց Լեռնիկը:

— Ծո՞ւխ: Ի՞նչ ծուխ...

Տարօրինակ ճտճտոց լսվեց, ու սենյակը լցվեց սիրտ խառնող ծխով:

— Վա՜յ, վա՛յ, այրվում է,— ճչաց Լեռնիկը,— ներսում ինչ-որ բան է այրվում...

Տղան դուրս քաշեց հեռուստացույցի լարը խրանից:

— Ի՛նչ արեցիր, հը՞... ի՛նչ արեցիր,— լացակումած բղավեց Լեռնիկը:

— Է՜հ,— փշրված հառաչեց տղան,— մրցումների ցուցադրումը տապալվեց, ու մենք էդպես էլ ոչինչ չտեսանք:

— Դեռ մի բան էլ ես եմ մեղավոր, հա՞,— վրա տվեց Լեռնիկը:— Հեռուստացույցի գլուխը կերար: Սխեմային էլ չուզեցիր նայել:

— Ես ի՞նչ պիտի գլուխ հանեի քո էդ սխեմայի խառն-խշտիկ գծերից:

— Բա որ գլուխ հանել չէիր կարող, ո՞ւր էիր քանդում:

— Ի՛նչ փչեց խելքս՝ այստեղ եկա,—ասաց տղան:— Հիմա մեր տանը նստած՝ հանգիստ նայելիս կլինեի:

— Ի-ի՞նչ...— գոռաց Լեռնիկը:

— Ի՜նչ ես աչքերդ վրաս չռում, ես հո դիտմա՞մբ չարի...

Հնչեց դռան զանգը:

Տղաները իրար նայեցին:

— Մերոնք են,— ասաց Լեռնիկը:

— Է՜հ, ես գնամ,— ասաց տղան:

Նա վերցրեց մածնաշշերով ցանցը, պատրաստվեց գնալ:

Լեռնիկը բաց արեց դուռը, շեմին կանգնածը դիմացի հարևանն էր:

— Դուք հեռուստացույցը միացրե՞լ եք, տղա՛ս,— հարցրեց նա:

— Իսկ ի՞նչ կա, որ...— կմկմաց Լեռնիկը:

— Մեր հեռուստացույցը ինչքան ժամանակ է, ոչինչ ցույց չի տալիս,— ասաց հարևանը:— Սկզբում ինչ-որ գծիկներ հայտնվեցին ու պատկերը միանգամից չքացավ:

— Մերն էլ,— շշնջաց Լեռնիկը:

— Ուրեմն՝ կայանից է,— ասաց հարևանը:

Ընկերը մածնաշշերը թույլ ծնգացնելով, աննկատելի դուրս գնաց:



# ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Ա. ՉԱՐՉՕՂԼՅԱՆ

**1920** թվականի հունիս-հուլիս ամիսներին ստեղծվեց պատկոմական կազմակերպություն Ալեքսանդրապոլում (այժմ Լենինական): Ալեքսանդրապոլի պատկոմական շարժման առաջին կազմակերպիչներն էին Հարություն Գարգաղոյանի գլխավորությամբ (այժմ թոշակառու) Մարտին Չարյանը (գեղարվեստա-թատերական ինստիտուտի ռեկտոր), Արմենակ Շեկոյանը (Մինիստրների սովետի կոնսուլտանտ), Ա. Չարչօղլյանը (ֆիզկուլտուրայի ինստիտուտի ռեկտոր), Լ. Իսահակյանը (կինոռեժիսյոր), Ա. Բայբուրթյանը (դոկտոր-պրոֆեսոր, մահացած), Լ. Միրզոյանը (մահացած), Հ. Նախշքարյանը (աշխատանքային ռեզերվների վարչության բաժնի վարիչ) և ուրիշները: Պատկոմական կազմակերպության աշխատանքները բազմազան էին: Հատկապես մեծ տեղ էր գրավում ֆիզիկական կուլտուրան՝ մարմնամարզություն, սպորտային խաղեր, թեթև ատլետիկա, ծանրամարտ, ֆուտբոլ և այլն:

Պատկոմական խմբակներում գործում էին ձեռքի գնդակի, բասկետբոլի, թեթև ատլետիկայի խմբակներ: Շատ տարածված էին շարժական և հատկապես ռազմական բնույթի խաղերը: Պատկոմական հրահանգիչներից կազմակերպվել էր ֆուտբոլի թիմ, որը այն ժամանակ (1924—1925 թթ.) համարվում էր հանրապետության ուժեղագույն թիմերից մեկը: Ընկերբնական շրջանում, մինչև 1925—1926 թթ. դպրոցներում ֆիզիկական դաստիարակության աշխատանքները վարում էին պատկոմական հրահանգիչները: Ընդհանրապես շատ մեծ էր պատկոմական կազմակերպության դերը աշակերտության ուսումնա-դաստիարակչական գործում: Պատկոմական խմբակները սիստեմատիկ կազմակերպում էին մարզահանդեսներ, սպորտի զանազան ձևերի մրցումներ, շքերթներ, ցուցադրա-

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



կան ելույթներ: Կազմակերպվում էին մնջախաղի ներկայացումներ՝ «Սպարտակի ապստամբությունը», «Գլադիատորների կռիվները», «Սասունցի Դավիթը» թեմաներով: Այդ գործում մեծ ճաշակ ու վարպետություն էր հանդես բերում պատկոմական շտաբի պետ Հարություն Գարգալոյանը:

Մեր աշխատանքներում մեծ տեղ էին գրավում նաև էքսկուրսիաները: Ամառային արձակուրդներին պատկոմական խմբերը հաճախ կազմակերպում էին հետիոտն էքսկուրսիաներ Լենինականի գավառի կանայան շրջաններն ու գյուղերը և գեղարվեստական ու մարմնամարզական ելույթներ ունենում աշխատավորների համար: Փարիզյան կոմունայի անվան կոլեկտիվը, որը պատկոմական կազմակերպության առաջնեկներից էր և որտեղ ես հրահանգիչ էի, ամառվա արձակուրդների մեծ մասը անց էր կացնում շրջաններում ու գյուղերում: Մենք մեկնում էինք Ախուրյան, Անի, Արթիկ, Ամասիա, Ղուկասյան, Սպիտակ և այլ շրջանների գյուղերն ու կազմակերպում էինք մարզահանդեսներ, փոքրիկ պիեսներ էինք բեմադրում, որոնք հանդիսատեսները ընդունում էին մեծ գոհունակությամբ: Էքսկուրսիաների հիմնական նպատակն էր պատկոմական կազմակերպության տարածումն այդ գյուղերում: 1922 թվականի աշնանը Ալեքսանդրապոլի պատկոմական մի խումբ հրահանգիչներ (Մ. Չարյան, Ա. Շեկոյան, Ա. Չարչօղլյան, Գ. Ստեփանյան, Գ. Մանուկյան և ուրիշներ) Հ. Գարգալոյանի ղեկավարությամբ մեկնեցին Երևան և 26 Կոմունարների այգում կազմակերպեցին մարզահանդես: Երևանցիները ևս այդ ելույթը ընդունեցին մեծ գոհունակությամբ:

1923 թվականին Ալեքսանդրապոլի մի խումբ հրահանգիչներ (Ա. Իսահակյան, Ա. Բայբուրդյան, Ա. Չարչօղլյան, Գ. Ստեփանյան, Բ. Ներսիսյան) Հ. Գարգալոյանի ղեկավարությամբ կազմակերպեցին առաջին հետիոտն էքսկուրսիան դեպի Ալագյազի գագաթը:

Գագաթը բարձրանալու նախորյակին գիշերեցինք խաշնարած քրդերի վրաններում և առավոտը վաղ բարձրացանք Ալագյազի գագաթը, իջանք Մանթաշի կիրճը և մեկնեցինք Աշտարակ: Գիշերը անցկացրինք Բյուրականի անտառում:

Մեկական օր էլ Աշտարակում և Էջմիածնում գիշերելուց հետո, հասանք Երևան, որտեղից գնացքով վերադարձանք Ալեքսանդրապոլ:

Լենինականի պիոներական կազմակերպությունը, չնայած մանկատների ղեկավարների դիմադրությանը, սերտ կապ էր պահպանում որբերի հետ, պարզաբանում նրանց պատկոմական կազմակերպության նպատակներն ու խնդիրները, հրավիրում էր մեր մարզահանդեսներին, երեկոներին, այսպիսով նպաստում սկաուտական կազմակերպության քայքայմանը:

1924 թվականի սեպտեմբերին Ալեքսանդրապոլի պատկոմների պատվիրակությունը իր փողային նվագախմբով մեկնեց Երևան՝ մասնակցելու պատկոմական շարժման 1-ին համահայաստանյան հավաքին: Այդ ժամանակ հանրապետության պատկոմների թիվը հասնում էր արդեն 8600-ի: Հավաքի բացմանը ներկա էին Հայաստանի կառավարության անդամները, կառավարության նախագահ Ա. Մյասնիկյանի գլխավորությամբ: Համահայաստանյան հավաքը, կամ ինչպես այն ժամանակ էր կոչվում «համրմատը», մեր կատարած աշխատանքների ստուգատեսն էր: Հավաքում մեծ տեղ էին գրավում սպորտային մրցումները, այլ ելույթներ և կուլտուրական միջոցառումներ:

1929 թվականին պիոներական համահայաստանյան 3-րդ հավաքը անցկացվեց Լենինականում, որից հետո մեր պիոներների հավաքական թիմը մեծ հաջողություններով մասնակցեց Անդրկովկասի և համամիութենական պիոներական հավաքներին: Համամիութենական հավաքում Հայաստանի պիոներական պատվիրակությունը նվաճեց 12 մրցանակ: Այդ թվում գնդակի նետումից 1-ին տեղը գրավեցին տղաները, 2-րդ տեղը՝ աղջիկները, թռիչք բարձրությունից՝ տղաները 2-րդ տեղը, ազգային պարերի գծով՝ 1-ին տեղը և այլն:

Սկսած 1927 թվականից, մեծ ծավալ ստացավ պիոներական ճամբարների կազմակերպումը:

Առաջին անգամ 1927 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին Էջմիածնի մի խումբ պիոներներ՝ թվով 60 հոգի, մեկնեցին Բաշապարան՝ պիոներական ճամբար: Ճամբարականները ապրում էին վրաններում և ղեկավարվում պիոներական լրիվ ինքնավարությամբ: Բոլոր աշխատանքները՝ ճաշ պատրաստել, մթերքներ հայթայթել, ամեն ինչ անում էին պիոներները: Ճամբարականները աշխատավորության համար հաճախ կազմակերպում էին մարզահանդեսներ, համերգներ և օգնում բերքահավաքին: Այդ օրերին շատ ապարանցիներ առաջին անգամ էին լըսում պիոներական փողի ձայն:




ՎԱԼԵՆՏԻՆ ԿՈՏԻԿ: Ընդամենը 12 տարեկան էր, երբ նրանց քաղաքը խուժեցին ֆաշիստները: Տեսավ ֆաշիստների անմարդկային արարքները, հազարավոր հայրենասերների մահապատժի ու կտտանքի ենթարկվելն ու, վրեժխնդիր լինելու համար, միացավ պարտիզաններին: Նա անվախ գնում էր հետախուզության, պայթեցնում թշնամու էշելոնները, կտրում հեռախոսալարերը, զենք հասցնում պարտիզաններին, գաղտնիքներ կորզում ու ոչնչացնում ֆաշիստ սպաների:

Նա ընկավ մարտում՝ խիզախ զինվորի նման, հենց այն օրը, երբ լրացավ իր 14 տարին, և չիմացավ, որ իր անունը գրվեց Սովետական Միության հերոսների շարքում և ինքը դարձավ հերոսների ընտանիքի ամենակրտսերը, անմահացավ ու հավերժ կապրի սերունդների հիշողության մեջ:

ԺԱՆ ՄԱՐԻ ԱՐՏՈՒՌ, ՊԻԵՌ ԲԵՆՈՒԱ, ԺԱԿ ԲՈԴՌԻ: Նրանք սովորում էին Փարիզի Բյուֆոն դպրոցում, երբ ֆաշիստները հարձակվեցին նրանց հայրենիքի վրա: Մարդկային խիղճը կորցրած հրոսակները ամենուր մահ ու սարսափ էին տարածում: Լռել ու նայել նրանց արարքներին չէին կարող ոչ միայն մեծերը, այլև փոքրերը, և ահա նրանք պարտիզանական խմբերի հետ կռվում են զավթիչների դեմ: 1943 թվականին ֆաշիստները հայտնաբերում են նրանց, իսկ փետրվարի 8-ին գնդակահարում:

ԴԱՆԻԵԼ ՖԵՐԻՆ: Փարիզի հարյուր հազարավոր բնակիչներ ցույցի են դուրս գալիս՝ ի պաշտպանություն Ալժիրի, որտեղ զավթողական պատերազմներ էին մղվում: Հակաֆաշիստական խաղաղ ցույցին դիմավորում են գնդացրային կրակով ու ականներով, որի հետևանքով վիրավորվում են 250 մարդ, իսկ 8-ը մահանում: Մահացածների մեջ էր ցույցի առջևից գնացող Դանիել Ֆերինը: Նա Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության օրգան «Յումանիտե» թերթի տարածողներից էր ու ցույցերի ակտիվ մասնակիցը: Մեր ժամանակի ֆրանսիական Գավրոշը թաղված է հանրահայտ Պեռ Լա Շեզ գերեզմանատան Փարիզի կոմունարների պատի տակ:

ՖԱԴԻԼ ՋԱՄԱԼ: Իրաքի մայրաքաղաք Բաղդադում ռեակցիոն ուժերը կազմակերպում են պետական հեղաշրջում: Սկսվում է կոմունիստների ձերբակալումը: Ձերբակալում են նաև պատանի Ֆադիլ Ջամալին: Զազրելի միջոցներով հարցաքննում են նրան և պահանջում, որ նա ասի կոմունիստների անունները: Ջամալը լռում է: Ծեծում են նրան, տանջում, շիկացած երկաթով այրում, բայց նա քաջաբար տանում է բոլոր կտտանքները և ոչինչ չի ասում:

Երկար չդիմանալով այդ անմարդկային տանջանքներին, 1963 թվականի փետրվարի 8-ին Ջամալը մահանում է: Բռնակալները նրան թաղում են հեռու անապատում, որպեսզի չբացահայտվի իրենց կատարած չարագործությունը: Բայց աշխարհի չորս ծայրերում էլ իմացան պատանի մարտիկի մասին:

ԼԵ-ՎԱՆ-ՏԱՄ: Վիետնամի հազարավոր պատանիներ իրենց ծնողների հետ ազատագրական պայքարի են ելել թշնամու դեմ: Լե-Վան-Տամը նրանցից մեկն էր: Պատերազմական տարիներին նա պարտիզանական ջոկատի հետախույզ էր: Այդ ընթացքում շատ առաջադրանքներ էր կատարել:

Մի օր էլ նրան հանձնարարում են պայթեցնել թշնամու զինապահեստը: Երբ արդեն մոտեցել էր պահեստին, նրան նկատում են թշնամիներն ու կրակ բացում: Պատանին զգալով, որ կենդանի չի մնա և առաջադրանքը չի կատարվի, իր վրա բենզին է լցնում և նետվում պահեստ:

Ահա այսպիսի հերոս պատանիների հիշատակին էր նվիրված մեր մայրաքաղաքի Շահումյանի շրջանի պիոներական պալատում փետրվարի 7-ին կայացած հանդեսը, որը ցնցող տպավորություն՝ թողեց ներկաների վրա:

Վերջում հանդիսավոր իրադրության մեջ, ի համալրումն շարքերի, իբրև արժանավոր փոխարինողներ, նոր անդամներ են ընդունում պիոներական կազմակերպության մեջ:

Ապա ընթերցվում է հավաքի մասնակիցների նամակը՝ Անջելա Դևիսին: Նամակն ավարտվում է հետևյալ տողով. «...Ամո՛ւր մնա, Անջե՛լա, դու արդարության կողմն ես, դու կհաղթես»:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՈՉԽԱՐ

Աշխարհում վայրի ոչխարի տեսակներ ու ցեղեր շատ կան, սակայն այն ցեղը, որ կա մեզ մոտ, տարածված է միայն Հայկական բարձրավանդակում. այդ ցեղի ոչխար աշխարհի ուրիշ ոչ մի վայրում չկա: Այդ պատճառով էլ միջազգային կենդանաբանական գրականության մեջ այդ ոչխարին կոչում են **հայկական վայրի ոչխար:** Կոչում են նաև **հայկական մուֆլոն:** Այդ ի՞նչ բան է: Մուֆլոնի հայրենիքը Միջերկրական ծովի Սարդինիա ժայռոտ կղզին է: Այդտեղից տարածվելով դեպի արևելք, հազարամյակների ընթացքում մուֆլոնը հասել է Փոքր Ասիա և այնտեղ տվել նոր ցեղ, որ կոչվում է **փոքրասիական** կամ **անատոլիական** վայրի ոչխար: Այնտեղից էլ տարածվելով հասել է Հայկական բարձրավանդակը և այստեղ, կլիմայի ու միջավայրի ազդեցության տակ փոփոխության ենթարկվելով, առաջացել է մուֆլոնի մի այլ՝ հայկական ցեղը: Ուրեմն, մեր լեռնային ոչխարը եվրոպական մուֆլոնի երեք ցեղերից մեկն է: Այդ երեք ցեղերը միասին կազմում են մեկ տեսակ («մուֆլոն»):

Որո՞նք են հայկական մուֆլոնի բնակության հիմնական վայրերը: Ազատ գետից դեպի արևելք ձգվող լեռներն են, որ Արարատի և Նորաշենի շրջաններում կոչվում են Ուրծի լեռներ, Արփա գետից դեպի արևելք կոչվում են Վայոց լեռներ, ապա՝ Զանգեզուրի լեռնաշղթան մինչև Կապուտջուղ և Բարգուշատ: Ոչխարներ հանդիպում են նաև Հեր-Հերի, Ջերմուկի, Ազիզբեկովի լեռներում: Ապա այդ կենդանու տարածման շրջանը գնալով դեպի Իրան՝ հասնում է Ուրմիո լճի արևելյան ափերը՝ Փերխին-դաղ և Թավրիզից հարավ՝ Սահանդի լեռները: Իսկ Թուրքիայում՝ մինչև Վանա լճի հարավային ափերը և մինչև Շատախ: Այդ ոչխարի ամենաստվար հոտերը արածում են Հյուսիսային Իրանի լեռներում ու լեռնային տափաստաններում՝ Մակվի, Խոյի, Սալմաստի՝ երբեմնի հայկական շրջաններում:

Անունով է ոչխար, բայց քիչ է նման մեր ընտանի ոչխարին, թեև նրա նախահայրն է համարվում: Մարդու խնամքի տակ ոչխարը աստիճանաբար կորցրել է իր նախկին տեսքն ու հատկությունները՝ արագ վազքը, մարմնի գեղանի կազմվածքը: Մարդուն ճա՞րպ է հարկավոր՝ դմակ է աճեցրել այդ կենդանու վրա, բո՞ւրդ է հարկավոր՝ բուրդ է աճեցրել: Վայրի ոչխարը ո՛չ դմակ ունի, ո՛չ բուրդ, ո՛չ էլ ոտքերն են կարճ ու ծանրաշարժ. գոյության կռվի ընթացքում գնալով կարգացել, կա-



Եվրոպական մուֆլոն (խույ մայր ոչխարների հետ)։ Հայկական լեռնային ոչխարը այս կենդանու երեք ցեղերից մեկն է։




## ՔԱՂԱՔՆԵՐ ՕՎԿԻԱՆՈՍՈՒՄ



Ճապոնական քաղաքաշինարարները, հաշվի առնելով իրենց երկրի սակավահողությունը և գերբնակչությունը, մտադիր են քաղաքներ կառուցել... օվկիանոսում: Այդ քաղաքները բաղկացած կլինեն «բնակելի տներից»— հսկայական գլաններից, շրջապատված լայնարձակ, կլոր նավակամրջով, որի վրա կլինեն հասարակական հիմնարկներ, թատրոններ, այգիներ, լողափեր: Տեխնիկայի ժամանակակից մակարդակը թույլ է տալիս կարծելու, որ նման քաղաքների կառուցումը լիովին հնարավոր է: Բայց վատն այն է, որ առայժմ ոչ ոք ցանկություն չի հայտնել դառնալու «լողացող քաղաքի» մշտական բնակիչ:

* * *

Մի անգլուհի տարեկան ծախսում է մեկ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Նա էլեկտրական լամպը վառում է միայն այն ժամանակ, երբ ուզում է վառել... նավթի լամպը:

* * *

*Գնդիկավոր ինքնահոսի մեկ ձողիկով հնարավոր է քաշել 80 կիլոմետրանոց մի գիծ:*

* * *

**Ինդոնեզիայի Ճավա կղզում կա մի տաք լիճ: Այդ լճի ջրից բարձրացող գոլորշիներն ու գազերը առաջացնում են մեծ-մեծ պղպջակներ, որոնց տրամագիծը հասնում է մինչև 3 մետրի: Պղպջակները պայթելիս կրակոցի ձայն են արձակում:**

## ՀՐՁԻԳ ՁԿՆԻԿՆԵՐԸ

*Ակվարիումի կարմիր ձկնիկներին կերակրելը մինչև վերջերս համարվում էր անմեղ մի զբաղմունք: Այժմ Շոտլանդիայի Դանդի քաղաքի հրդեհաշեջները հաստատում են, որ այդ ձկնիկները առաջացրել են... հրդեհ:*

*Մի քանի ձկնիկներ կուտակվել են ակվարիումի թափանցիկ պատի մոտ: Արևի ճառագայթներն ընկնելով դրանց փայլփլուն թեփուկներին, անդրադարձել են ինչպես ոսպնյակից, և այրվել է վարագույրը:*

---

տարելագործվել է նրա մարմինն այնպես, որ իր վազքով գերազանցի իրեն հետապնդող գայլերի ոհմակին, իր շիկակարմիր կամ գորշ գույնով ձուլվի մեր լեռների հարավային լանջերի արևից խարակված գույնին ու մնա աննկատ: Արուն ձեռք է բերել վիթխարի եղջյուրներ, որոնցով ոչ միայն պայքարում է իր ախոյան խոյերի դեմ, այլև երբեմն նույնիսկ հուժկու հարվածով փշրում է իրեն հետապնդող գայլի ծնոտն ու ցած նետում նրան լեռնային արահետից:

Ամռան և աշնան ամիսներին ես վայրի խոյերի մեծ ու փոքր խմբերի եմ հանդիպել Ուրծի լեռնաշղթայի սարահարթերում: Այդ ժամանակ մայր ոչխարները շրջում են առանձին խմբերով, խոյերից հեռու: Ինչո՞ւ է այդպես: Բացատրեմ: Մայր ոչխարը հղի է մնում մոտ հինգ ամիս, ուստի բնության սահմանած ժամկետից շուտ չի խառնվում խոյերի խմբին: Եթե խառնվի, ասենք, սեպտեմբեր ամսին, գառը աշխարհ կգա հինգ ամիս հետո, ձմռան սառնամանիքին և կկործանվի թե՛ ինքը, թե՛ իր ծննդկան մայրը: Այդ պատճառով էլ, վայրի ոչխարների բեղմնավորման շրջանն սկսվում է դեկտեմբերին, այն հաշվով, որ ծինն ընկնի գարնան օրերին, երբ թե՛ տաք է, թե՛ կանաչ կա արածելու:

Բոլոր վայրի խոտաճարակների նման, մուֆլոնի գառները ևս ծնվում են կարգացած վիճակում: Այնպես որ աշխարհ գալու հենց առաջին օրը նրանք կարող են և՛ վազել, և՛ թաքնվել վտանգից: Մայր ոչխարը սովորաբար կույգ է ծնում, թեև երբեմն բերում է նաև 3 կամ , գառ:

Շրջող, քոչող կենդանի է վայրի ոչխարը և նրա քոչելը կապ ունի կերի հետ: Ձմեռը իջնում է հովիտները և արածում լեռների արև-

## ԲԱՄԲՈՒԿԸ, ԴԺԲԱԽՏԱԲԱՐ... ԾԱՂԿԵԼ Է

*Ճապոնացի հողատերերը զարմանքով նկատեցին, որ իրենց բամբուկի «անտառները» ծաղկում են: Մինչ այդ նրանցից ոչ ոք նման բան չէր տեսել:*

*Մի քանի շաբաթվա մեջ բամբուկի բարձր ցողուններն սկսեցին չորանալ:*

*Գիտնականները բաց արին արխիվները և հողատերերին հիշեցրին, որ բամբուկը ծաղկում և մեռնում է 120 տարին մեկ: Արմատները ողջ են մնում, բայց կրկին բուսնելու համար անհրաժեշտ է 5—15 տարի: Իսկ թե ինչու են բամբուկների մեծ մասը ծաղկում միևնույն տարում, առայժմ ոչ ոք չի կարող ասել:*

## ԿՂԶԻ-ՈՒՐՎԱԿԱՆԸ



Աշխարհագրական հայտնագործությունների պատմության մեջ հայտնի են հանելուկային ու խորհրդավոր կղզիներ: Օրինակ, Էպի կղզու մոտ (Նոր Հեբրիդներ) կա մի ուրվական-կղզի: Նա պարբերաբար հայտնվում է ջրերի խորքից և ապա... անհետանում: Այդ կղզու տարածությունը մեկ քառ. կմ. է: Կղզին անուն չունի, ավելի ճիշտ, ունի բազմաթիվ անուններ, քանի որ ամեն հայտնվելիս յուրաքանչյուր նոր տեր նոր անունով է կոչել նրան:

# Ճպուռն ու մրջյունը



(Ըստ Ժ. Ֆաբրի)

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*

Ո՞վ անգիր չգիտե այս տողերը.

«Թըռի-վըռի մի ճպուռ,
Ողջ ամառը շուռումուռ...»

Այս խոսքերը դպրոցական տարիներից մինչև խորին ծերություն մնում են մեր հիշողության մեջ: Բայց արդյոք շատե՞րը գիտեն, որ առակախոսը անարդար է վարվել ճպուռի հետ:

Այս առակը մեզ է հասել Հունաստանից, որտեղ այնքան շատ են ձիթենիներն ու ճպուռները: Սակայն ո՞ր գյուղացին չգիտե, որ ձմռանը ճպուռներ չեն լինում. ո՞վ այգեթաղի ժամանակ հողի մեջ դեմ չի առել ճպուռի թրթուրների:

Հին Հունաստանի գյուղացիներն էլ հիմար չէին և լավ գիտեին ճպուռի կյանքը: Հապա ինչպե՞ս է, որ առակ հորինողն այդքան

---

կող լանջերին: Եթե ձյունը խորն է՝ կճղակներով ետ է տալիս և պոկում նրա տակի չորացած խոտը: Ուտում է նաև թփերի բողբոջները, կրծում է չորացած մոլախոտեր: Երբ գարունը շարժվում է դեպի լեռները, ոչխարներն էլ գարնան պարգև կանաչն արածելով՝ դեպի լեռներն են գնում, ուր մնում են մինչև ուշ աշուն:

Անցյալում վայրի ոչխար մեր երկրում շատ կար: Սևանի Արեգունի ափին գտնված վայրի խոյի գանգը ապացուցում է, որ մի ժամանակ այդ կենդանիներից կային նաև Սևանի ավազանում: Հրազդանի շրջանի Քաղսի գյուղից ներքև, նախաուրարտական շրջանի դամբարանները պեղելիս գտնվեց մի որսորդի աճյուն՝ վայրի ոչխարի կմախքի մոտ: Այդ էլ ցույց է տալիս, որ հնում վայրի ոչխարներ կային նաև ներկայիս Հրազդանի շրջանում: Մաստարա գյուղի հանդում գտնված ոչխարի մնացորդները ցույց են տալիս, որ մի ժամանակ այդ կենդանիներից եղել են նաև Արագածի արևմտյան լանջերին: Եվրոպացի ճանապարհորդ Վագները գրում էր, որ ինքը 1843 թվականին Արարատի վրա տեսել է մեծեղջյուր վայրի խոյեր:

Այսպիսով, դուրս է գալիս, որ հընում վայրի ոչխարներ էին արածում մեր հանրապետության գրեթե բոլոր այն լեռներում, ուր անտառներ չկան:

Դժբախտաբար գնալով կրճատվեց այդ շատ արժեքավոր կենդանու տարածման շրջանը: Այժմ մեր երկրում քիչ ոչխար է մնացել: Երեմնական թվականներին մենք հարյուր, երկու հարյուր գլխից բաղկացած հոտերի էինք հանդիպում Արագածյանի և Սաղարակի լեռներում: Իսկ այժմ նրանք հանդիպում են մանր խմբերով և մարդ տեսնելիս՝ փախչում են խելակորույս...



# ԵՐԲ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԾՆՎԵՑԻՆ...

## «ՄԱՐՍԵԼԻԵԶԸ

*18-րդ դարի վերջին ֆրանսիական ժողովուրդը հայրենասիրական մեծ վերելք էր ապրում: Ավստրիայի և Պրուսիայի կոալիցիոն բանակի դեմ մարտնչող հեղափոխական բանակի շարքերում ծառայող ռազմական ինժեներ Ռուժե դը Լիլը 1792 թվականի հունվարի 25-ի լույս 26-ի գիշերը, գրեց «Հռենոսի բանակի մարտական երգը»:*

*Այդ երգը առաջին անգամ հեղինակը երգեց Ստրասբուրգի քաղաքագլուխ Դիետրիշի տանը կայացած խնջույքի ժամանակ: Մարտակոչ հանդիսացող ոգեշունչ տեքստը, դինամիկ, հերոսական երաժշտությունը ցնցեց ներկաներին: Երգը արագորեն տարածվեց հեղափոխական բանակում:*

*Մարսելյան գումարտակի կամավորների միջոցով երգը մուտք գործեց հեղափոխության բոցերով բռնկված*

սխալներ է թույլ տվել իր պատմության մեջ:

Ամենայն հավանականությամբ այդ առակը հունական էլ չէ, այլ հնդկական, և նրանում խոսվել է մի այնպիսի միջատի մասին, որին հույն առակագիրը ծանոթ չի եղել: Նա անծանոթ անունը փոխարինել է ճպուռով, և ծնվել է սխալը, որն անցել է սերնդից սերունդ ու հասել մինչև մեր օրերը:

Փորձենք արդարացնել մեր երգչին՝ ճպուռին, որին առակը հանի-



բավի մեղադրում է: Որ ճպուռն ու մրջյունը հանդիպում են իրար՝ ճիշտ է: Միայն թե ուղղակի առակի պատումածին հակառակ: Ճպուռը երբեք չի գնում մրջյունի մոտ, որովհետև ուրիշի օգնության կարիքը չի զգում: Մինչդեռ մրջյունը, այդ բարյանչին ու կողոպտիչը, հաճախ է այցելում ճպուռին: Նա գալիս է ճպուռի մոտ, և ոչ թե խնդրում, այլ ուղղակի հափշտակում է նրա ունեցած բարիքը:

Տեսնենք, թե այդ ինչպես է կատարվում:

Հուլիսին, երբ վրա է հասնում ետճաշյա խեղդող տոթը, ճպուռը տոնում է իր հաղթանակը: Նստելով որևէ ծաղկի ճյուղին, առանց մի վայրկյան իսկ երգը դադարեցնելու, նա իր բարալիկ կնճիթով ծակում է ցողունի կեղևը: Ապա, երկար-երկար ներծծելով այդ արհեստական ավազանի համեղ հյութը, վայելում է սեփական երգն ու հիանալի օշարակը:

Շուրջը բազմաթիվ ծարավածներ են վխտում: Նկատելով ճպուռի աղբյուրը, բոլորն շտապում են նրա մոտ: Սկզբում բավարարվում են ավելցուկով՝ օշարակի կաթիլներով, որոնք հոսում են ցողունն ի վար: Ճանճերը, պիծակները, փոքրիկ եզնաբզեզները կիտվում են իրար գլխի: Բայց ամենից շատ, իհարկե, մրջյունները:

Ավիրական աղբրակին հասնելու համար անկուշ հյուրերը մըտնում են ճպուռի փորի տակ, իսկ



սա կանգնում է բարակ, երկար ոտիկներին, որպեսզի հյուրերին առաջ թողնի: Սակայն շուտով կերօթիկները հարձակման են անցնում: Դրանց մեջ ամենահանդուգնները մրջյուններն են: Նրանք խածում են ճպուռի ոտիկները, քաշում թևերից, ոմանք բարձրանում են մեջքին: Ավելի անպատկառները կառչում են կնճիթից, ջանալով աղբյուրից հեռացնել նրան:

Վաղ թե ուշ սպառվում է ճպուռի համբերությունը, և նա թռչում-հեռանում է, ավազանը թողնելով այդ աներես գաճաճներին: Ավազանը շուտով ցամաքում է, որովհետև ճպուռի ջրհան պոմպն այլևս չի աշխատում: Ավազակներն շտապում են վայելել քաղցրահամ

Փարիզ և ստացավ «մարսելցիների հիմն», կրճատ՝ «Մարսելիեզ» անվանումը: Այդ երգը շուրթերին ժողովրդական կանգվածները 1792 թ. օգոստոսի 10-ին պաշարեցին ու գրավեցին թագավորական Թյուիլրի ամրոցը:

Երգը հնչեց նաև 1830 թ. հուլիսյան օրերին, 1848 թվականի փետրվարյան հեղափոխության ժամանակ, Փարիզյան կոմունայի բարիկադներում: Երգը չէր մոռացվում: «Մարսելիեզը» դարձավ Ֆրանսիայի պետական հիմնը:

## «ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԸ»

Հերոսական պայքարի մեջ է ծնվել ազատության երգերից ամենանշանավորը՝ «Ինտերնացիոնալը»: Աշխարհում ո՛չ մի երգ, ո՛չ մի հիմն այնքան լայն տարածում չի գտել աշխատավորների շրջանում, ինչպես այն: Երգի հեղինակը՝ ֆրանսիացի բանաստեղծ Էժեն Պոտիեն կոմունայի եռանդուն գործիչներից էր և բարիկադների վրա մնաց մինչև նրա անկման վերջին օրերը: Երգը գրվել է 1871 թվականի հունիսին՝ կոմունայի պարտության գրեթե հաջորդ օրը, ընդհատակում:

«Ինտերնացիոնալը» առաջին անգամ տպագրվել է 1887 թվականին Պոտիեի «Հեղափոխական երգեր» ժողովածուի մեջ: 1888 թվականին ֆրանսիացի կոմպոզիտոր, սոցիալիստ Պիեռ Դեգեյտերը գրեց «Ինտերնացիոնալի» հանրածանոթ երաժշտությունը:

Երգը օգնեց ամբողջ աշխարհում կոմունայի գաղափարների տարածմանը, դարձավ աշխարհում առաջին սոցիալիստական պետության՝ Սովետական Միության և աշխարհի մյուս կոմունիստական կուսակցությունների հիմնը և երգվում է աշխարհի բոլոր լեզուներով:

ՑԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

---

հեղուկի վերջին կաթիլները:

Եվ այսպես, իրականությունը փոխում է առակի հերոսների տեղերը: Մուրացիկը, որ պատրաստ է նույնիսկ բացահայտ թալանի, մրջյունն է: Աշխատավորը, որ պատրաստ է ունեցածը կիսելու ծարավների հետ, ճպուռն է:

Հինգ-վեց շաբաթվա ուրախ կյանքից հետո, մեր երգիչը ցած է գլորվում—նրա ժամանակն անցավ: Թափառաշրջիկ մրջյունը դեմ է առնում ընտիր կերին, կտրատում, մաս-մաս է անում ու լրացնում իր ձմռան պաշարները: Հաճախակի կարելի է տեսնել մեռնող ճպուռի, որի թևերը թրթռում են ճամփի փոշիների մեջ. նա ամբողջովին սև է թվում՝ վրան կիտված մրջյուններից, որոնք հենց այդպես էլ պատառոտում են դեռևս կիսամեռ երգչին:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



## ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

*ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ*

— Մարդը ծնված է, որպեսզի հողի վրա ապրի,— բարբառեց իմաստունը:

Մարդը նետվեց ջուրը և լողալ սովորեց: Իմաստունը ծոծրակը քորեց և ուղղում մտցրեց.

— Մարդը ծնված է, որպեսզի ապրի հողի վրա և ջրի մեջ:

Մարդը օդանավ հնարեց ու թռչել սովորեց: Իմաստունը մի քիչ էլ քորեց ծոծրակը և դարձյալ ուղղում մտցրեց.

— Մարդը ծնված է, որպեսզի ապրի հողի վրա, ջրում և օդում:

Մարդը տիեզերք թռավ, ուր չկա ո՛չ հող, ո՛չ ջուր, ո՛չ օդ, և սկսեց շարժվել դատարկության մեջ: Սաստիկ վիրավորված իմաստունը պաշտոնաթող եղավ:

Երբեք չպետք է սահմանափակել մարդու հնարավորությունները:






## ՓՈՔՐԻԿ ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻՆ

Բեյրութի Ուեսթ հոլ սրահում հունվարի 24-ին հոծ բազմություն էր հավաքվել: Մեկը մյուսի ետևից սքանչելի մեկնաբանությամբ հնչում էին Բախի, Բեթհովենի, Մոցարտի, Խաչատրյանի, Ջիլալյանի դաշնամուրային ստեղծագործությունները: Յուրաքանչյուր ստեղծագործության ավարտից հետո ներկաները բուռն ծափերով արտահայտում էին իրենց հիացմունքը: Տեղական մամուլը՝ հայ թե օտար, գովասանքով գրեց դաշնակահարուհու մասին, նրա մեջ տեսնելով ապագայի մեծ արվեստագետուհուն: Իսկ դաշնակահարուհին՝ Սինթիա Խաչատրյանը ընդամենը յոթ և կես տարեկան է:

Համերգի վերջում իրեն տրված հարցերին ահա թե նա ինչպես պատասխանեց:

— Ուրա՞խ ես, Սի՛նթիա,— հարցրին նրան, ցույց տալով թերթերում տպագրված իր լուսանկարները:

Պատասխանի փոխարեն աղջիկը ժպտաց:

— Նվագելիս չէի՞ր վախենում, որ կշփոթվես հանկարծ:

— Ո՛չ, չէի վախենում: Վստահ էի, որ չեմ շփոթվի:

— Քեզ համար դժվար չէ՞ր այդքան երկար և բարդ ծրագիրը:

— Ո՛չ, ես շատ վաղուց էի պատրաստվում և շատ եմ աշխատել:

— Բեմի վրա ի՞նչ էիր մտածում:

— Միայն նվագելու մասին:

ԺԱՆԵԹ ՔԱՍՈՒՆԻ
Բեյրութ




## ՊԵՏՔ Է ԵՐԳԻ

Խաղացողները նստում են շրջան կազմած, իսկ զվարճաբանը կանգնում է կենտրոնում: Նա արտասանում է հանրածանոթ երգի մի քանի տող:

Օրինակ՝

Գարուն բացվեց մեր նոր աշխարհին,
Արև շողաց հայոց սարերին...

Արտասանելուց անմիջապես հետո նա մատնացույց է անում որևէ մեկին և սկսում է հաշվել՝ 1, 2, 3: Այս ժամանակամիջոցում խաղացողը պետք է ոտքի կանգնի ու երգի հանրածանոթ երգի նույն կամ ուրիշ տողեր: Եթե չկարողացավ՝ մնում է կանգնած, իսկ եթե երգեց՝ նստում է:

Զվարճաբանը շարունակում է խաղը, արտասանելով տողեր, քառյակներ, ուրիշ հանրածանոթ երգերից:

Խաղի վերջում ովքեր մնում են նստած, համարվում են հաղթողներ:

## ՈՎ ՇՈՒՏ ԵՎ ՃԻՇՏ ԿԳՐԻ

Վերցրեք թուղթ ու մատիտ և կատարեք այս խաղերը, տեսեք ում կհաջողվի ավելի ճիշտ և շուտ գրել: Ամեն մի խաղի համար ժամանակ նշանակեք 10 րոպե:



1. Գրեցեք օպերաների, բալետների անուններ, որոնց վերջին տառը լինի ա: Նշեք նաև հեղինակի անունը. օրինակ՝ Իոլանտա—Չայկովսկի
Տրավիատա—Վերդի
Ռայմոնդա—Գլազունով և այլն:



2. Գրեցեք այս նշանավոր գրողների իսկական անուն-ազգանունները՝ Մուրացան, Րաֆֆի, Շանթ, Սիամանթո, Նար-Դոս, Սայաթ-Նովա, Արազի, Նաիրի Զարյան:



3. Հայ 19 արվեստագետներ ունեն Սովետական Միության ժողովրդական արտիստի կոչում: Գրեցեք նրանց անուն-ազգանունները:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ



ԻՆՔՆԱՆԿԱՐ

# ԱԼԲՐԵԽՏ ԴՅՈՒՐԵՐ

Ալբրեխտ Դյուրերը XVI դարի սկզբներին գերմանական արվեստի առաջադիմական ուղղության առաջնորդն էր: Լինելով մեծ նկարիչ և փորագրիչ, նա իր ուժերը փորձել է նաև ճարտարապետության մեջ, զբաղվել ռազմական շինարարության տեսությամբ, հետաքրքրվել բնագիտության, մաթեմատիկայի և հասարակական գիտությունների տարբեր խնդիրներով: Թողել է գրական հարուստ ժառանգություն: Իր աշխատություններում Դյուրերը շարադրում է արվեստի գիտական հիմունքները:

Դյուրերը ծնվել է գերմանական գիտական մտքի, տեխնիկայի և արվեստի խոշորագույն կենտրոն Նյուրնբերգում: Իր վաղ շրջանի դիմանկարներում նա պատկերում էր ժամանակակիցներին՝ եռանդուն, փայլուն ընդունակությունների և ուժեղ կրքերի տեր մարդկանց:

Դարասկզբին Դյուրերի արվեստում նկատելի է դառնում որոշակի բեկում: Նրա վաղ գործերի հուզումնալից և անհանգիստ տրամադրությանը փոխարինում է հավասարակշռության և հանգստության զգացումը:

Հումանիզմի և ռեֆորմացիայի ոգով են շաղախված պղնձաքերթերի վրա կատարած նրա երեք հռչակավոր փորագրությունները՝ «Ասպետը, մահը, և դևը», «Սուրբ Երեմիա», «Մելամաղձություն» (1513—1514 թթ.):

1526 թ. նա նկարեց և քաղաքային խորհրդին նվիրեց «Չորս առաքյալ» կտավը: Խառնակության և երկպառակությունների այդ ժամանակաշրջանում Դյուրերը հիշյալ կտավում մարմնավորել էր ճշմարտության և արդարության քաջարի և եռանդուն պաշտպաններին:


Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 6 հունիս 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*նկ. ՄԱՆՈՒԿ ՂՈԴՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱԶՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05229: Պատվեր 366: Տպաքանակ՝ 71700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 26 V 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.




ԳԻՆԸ՝ 10 կ
ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՄԵՐ ԳՅՈՒՂԸ
ԱՌԱՔԵԼՅԱՆ ՍՄԲԱՏ
Եղեգնաձորի շրջան, գյուղ Ելփին, 5-րդ դաս. աշ.



ՊԱՐ
ՌՇՏՈՒՆԻ ՆԱԻՐՈՒՀԻ
Երևան, 11 տ.

ԳԱՐՈՒՆ
ԱՎԴԱԼՅԱՆ ՍԱՐԳԻՍ
Թալինի շրջան, գյուղ Վ. Թալին, 6-րդ դաս. աշ.

